Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 18 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1957

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# ԱՆԹԵՐԻ ԿԱՏԱՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԻ ՊԱՏՎԻՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Քաղաքական ու աշխատանքային չտեսնված խանդավառություն է տիրում մեր լայնածավալ Հայրենիքի բոլոր գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, ՄՏ կայաններում ու սովխոզներում, հանքահորերում ու նորակառույցներում։ Մեծ տոնը դիմավորելու պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը ոտքի է հանել քաղաքի ու գյուղի միլիոնավոր աշխատավորների։ Նրանք բուռն խանդավառությամբ ձգտում են արժանավայել նվերներով դիմավորել պանծալի տոնը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը։*

*Համաժողովրդական մրցության այս օրերին սովետական մարդիկ ձեռք բերած հաջողությունների հետ միասին հարստացնում են իրենց արտադրական և տեխնիկական գիտե-*

չիքները, սովորում են հաստատուն կերպով տիրապետել նոր, բարձր տեխնիկային, նրանից ստանալ առավելագույնը։ Նրանք տոգորված են մի նպատակով՝ տալ սոցիալիստական Հայրենիքին արդյունաբերական ու գյուղատնտեսական է՛լ ավելի շատ և բարձրորակ արտադրանք։

Ամեն օր թերթերն ու ռադիոն բազմաթիվ օրինակներ են բերում մրցման ընթացքում առաջավորների ստանձնած պարտավորությունների կատարման մասին, նրանց հայրենանվեր գործերի մասին։ Իր աշխատանքին հմտորեն տիրապետելու շնորհիվ Ղափանի հիմնական հանքուղու վագոնավար Գառնիկ Օհանյանը անցած ամիսների իր առաջադրանքը կատարել է 210 տոկոսով։ Ժամկետից շուտ իրենց արտադրական պլանները կատարել են նաև ուրիշ շատ հանքագործներ։ Ամբողջությամբ վերցրած հանքի կոլեկտիվը հանքաքարի հանույթի պլանը կատարել է 110 տոկոսով, հանքաքարի մեջ պղնձի պարունակության պլանը 104 տոկոսով, հանքաքարի ինքնարժեքը իջեցրել է 5 տոկոսով։ Ղափանի և Ալավերդու հանքագործները ոչ մի ջանք չեն խնայում տալ երկրին ավելի շատ ու բարձրորակ պղինձ։

Շահումյանի շրջանի Ստալինի անվան



տրիկոտաժի ֆաբրիկայի աշխատավորները անցած 8 ամսվա պլանը կատարել են 105,8 տոկոսով, երկրին տալով 405 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։ Նրանք միաժամանակ բարելավել են արտադրանքի որակը և զգալիորեն իջեցրել ինքնարժեքը։ Այդ ժամանակաշրջանում գործարանը տնտեսել է 5,7 տոննա հիմնական հումք, 29 տոննա վառելանյութ, ավելի քան 9 հազար կիլովատ ժամ էլեկտրաէներգիա։ Այստեղ առաջավոր շատ բանվորներ ներկայումս աշխատում են 1958 թվականի հաշվին։

Իր ստանձնած պարտավորությունները հաջողությամբ է կատարում Երևանի կաշվի գործարանի կոլեկտիվը, որը 8 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է ժամկետից 11 օր շուտ, օգոստոսի 20-ին։ Մինչև ամսվա վերջը պլանից ավել թողարկվել է 2,5 միլիոն ռուբլու արտադրանք, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 6,5 տոկոսով։ Գործարանի մեխանիկական ցեխի բանվորները ներկայումս եռանդուն աշխատանք են կատարում ժամկետից շուտ շահագործման հանձնել կոշտ կաշիների մեքենայացված չորանոցը, որը հնարավորություն կտա 65 տոկոսով բարձրացնել աշխատանքի արտադրողականու-

թյունը։ Երևանի Ավտոդողերի գործարանը ամրապնդելով ձեռք բերած հաջողությունները ութ ամսվա առաջադրանքը կատարել է 102,7 տոկոսով։ Անցած տարվա նույն ժամանակաշրջանի հետ համեմատած արտադրանքի ծավալը ավելացել է 25,3 տոկոսով։ Ավտոդողագործներին հաջողվել է կարճ ժամանակամիջոցում խնայել 30 տոննա կաուչուկ և 15 հազար քառ. մետր կորդ։

Շինարարության ասպարեզում լուրջ հաջողություններ է ձեռք բերել Հայկական ՍՍՌ շինարարության մինիստրության Կիրովականի № 7 տրեստի կոլեկտիվը։ Շինարարական-մոնտաժային աշխատանքների տարեկան պլանը կոլեկտիվը կատարել է ժամկետից 4 ամիս շուտ։ Աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 9 տոկոսով։ Տրեստի կողմից կատարվող 50 նորակառույցների շինարարական հրապարակներում լայնորեն կիրառվում է աշխատանքի առաջավոր փորձը։ Շատ օբյեկտներ արդեն որոշել են տարեկան պլանից դուրս կատարել 18—20 միլիոն ռուբլու նոր աշխատանք։ Մինչև տարվա վերջը տրեստը շահագործման է հանձնելու ավտովերանորոգման գործարա-



նը, «Ավտոմատիկա» գործարանի առաջին հերթը, Քիմկոմբինատի հիվանդանոցային ավանը, մի շարք բնակելի տներ և այլ օբյեկտներ։

Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ծավալված սոցմրցման մեջ զգալի հաջողություններ են ձեռք բերել նաև ռեսպուբլիկայի մյուս արտադրական հիմնարկ-ձեռնարկությունները, երկաթուղային տրանսպորտը և այլ շինարարական կազմակերպություններ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձը նոր նվաճումներով դիմավորելու համար հայրենասիրական խանդավառ աշխատանք են կատարում սոցիալիստական գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողները։ Կոլտնտեսային գյուղացիությունը ոգևորությամբ ընդունեց պարտիայի կոչը՝ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ մոտակա տարիներին Ամերիկայի Միացյալ Նահանգներին հասնելու մասին։ Ռեսպուբլիկայի շատ կոլտնտեսություններ մսի և կաթի հանձնման ընթացիկ տարվա իրենց պետական պարտավորությունները կատարել են ժամկետից շուտ։ Մարտունու շրջանի Վաղաշեն գյուղի կոլտնտեսությունը

երկու ամիս առաջ ավարտեց հարազատ պետությանը միս ու կաթ հանձնելու իր տարեկան պարտավորությունները, միաժամանակ պլանից ավել հանձնելով 200 ցենտներ միս և այդքան էլ կաթ։

Բազմաթիվ կոլտնտեսություններ ու շրջաններ հաջողությամբ հավաքելով այս տարվա հացահատիկային կուլտուրաների առատ բերքը, արդեն ավարտել են հացահատիկի հանձնման իրենց պետական պարտավորությունները։

Տոգորված երկրին ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ տալու պարտիայի կոչով, ռեսպուբլիկայի գյուղատնտեսության աշխատողները սոցիալիստական նոր պարտավորություններ են վերցրել։ Նրանք պայքարում են 1957 թ. հողատարածության յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց 55 ցենտներ միս և 220 ցենտներ կաթ ստանալու համար։ Շատ շրջանների առաջավոր կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորները ստանձնել են ավելի բարձր պարտավորություններ։ Շահումյանի շրջանը պարտավորվել է 1957 թվականին բոլոր կարգի տնտեսություններում հողատարածության 100 հեկտարի դիմաց մսի արտադրությունը հասցնել 94 ցենտների, կոլտնտեսություն-



ներում՝ 85 ցենտների, բոլոր կարգի տնտեսություններում կաթի արտադրությունը հասցնել 529 ցենտների, կոլտնտեսություններում՝ 410 ցենտների։ 1960 թվականին բոլոր կարգի տնտեսություններում մսի արտադրությունը հասցնել 120 ցենտների, այդ թվում կոլտնտեսություններում՝ 100 ցենտների, բոլոր կարգի տնտեսություններում կաթի արտադրությունը հասցնել 850 ցենտների, կոլտնտեսություններում՝ 520 ցենտների։ Այսպիսի լուրջ պարտավորություններ են վերցրել նաև Էջմիածնի, Արտաշատի, Ալավերդու և շատ ուրիշ շրջաններ ու կոլտնտեսություններ։

Ոգևորված պարտիայի կողմից սովետական ժողովրդի նկատմամբ ցուցաբերած մշտական հոգատարությունից, մեր ռեսպուբլիկայի աշխատավորները անում են ամեն ինչ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ծավալված մրցության մեջ իրենց ստանձնած պարտավորությունները պատվով կատարելու, սոցիալիստական Հայրենիքի հզորությունը է՛լ ավելի բարձրացնելու համար։

---

# ՄԵԾԱՏԱՂԱՆԴ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

## (Ե. ՉԱՐԵՆՑԻ ԾՆՆԴՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

ԳՐ. ՍԱՐԳՍՅԱՆ

*Եղիշե Չարենցը հանդիսանում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի խոշորագույն երգիչներից մեկը, որն իր «շանթալից, պայծառ քնարով» արտահայտեց մեր երկրի ու ժողովրդի պատմական առաջընթացի ուղին։ Իր ստեղծագործության գաղափարական հագեցվածությամբ ու գեղարվեստական ձևերի բազմազանությամբ, թեմատիկ լայն ընդգրկումներով ու պոետիկական բարձր կուլտուրայով նա պատվավոր տեղ է նվաճել սոցիալիստական գրականության անվանի վարպետների շարքում։*

*Գրական ասպարեզ իջնելով դեռևս առաջին համաշխարհային պատերազմի նախօրեին, երբ հայ ժողովուրդը կանգնած էր անորոշ ճակատագրի հանդեպ, պատանի Չարենցը ենթարկվում է այն ժամանակ լայնորեն տարածված սիմվոլիստական հոսանքի ազդեցությանը։ Նրա վաղ շրջանի երգերը*



*հագեցած են մշուշային սիմվոլիկայով ու անորոշ թախծի տրամադրությամբ։ Անբավարարվածություն տիրող քաղքենիական շրջապատից, չգոհացած սիրո վիշտ, մենակության զգացում, խորտակված ցնորքներ ու տենչեր, ահա թե ինչով են հատկանշվում սկսնակ պատանու առաջին թոթովանքները, որոնց մեջ, սակայն, նկատվում է նաև հեղինակի լավատեսությունը, մի այլ կյանքի կարոտը։ Դրա շնորհիվ էլ շուտով նա երես թեքեց գունատ ու տկար շրջապատից, իր հայացքն ուղղեց դեպի ապագան։ Լավագույն ապագայի տենչերը նրա մեջ չմեռան նույնիսկ այն ծանր օրերին, երբ իմպերիալիզմի մագիլներում խեղդվում էին աշխատավոր մասսաների ստեղծարար ուժերը և հայ ժողովուրդը ենթարկվում էր բարոյական ու ֆիզիկական ծանր հարվածների։ Բանաստեղծը անձամբ ճաշակեց իմպերիալիստական պատերազմի պատճառած տառապանքները և այդ ամենն արտահայտեց իր մի շարք ստեղծագործություններում, որոնցից առանձնապես ուշագրավ է «Դանթեական առասպել» պոեմը (1916 թ.)։*

*Չարենցի, որպես քաղաքացու և բանաստեղծի, գաղափարական աճման ու հասունացման խնդրում վճռական դեր խաղաց*

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, որ նա ընդունեց ջերմ խանդավառությամբ։ Մեծ Հոկտեմբերի վերածնիչ շողերի տակ զտվեց նրա հոգին անցյալի մրուրից և փարվեց ռևոլյուցիայի հզոր երթին։ Հաղթահարելով իր ստեղծագործական ներքին հակասությունները՝ երիտասարդ բանաստեղծը խորապես ըմբռնեց պատմության մեծագույն շրջադարձի համաշխարհային-պատմական իմաստը և անվերապահորեն միացավ ազատագրական շարժման դրոշը պարզած ռևոլյուցիոն մասսաներին։ Որպես Կարմիր Բանակի շարքային մարտիկ նա ակտիվ մասնակցություն ունեցավ ինտերվենտների ու սպիտակ-գվարդիականների դեմ մղված հերոսամարտերին Ցարիցինում և Հյուսիսային Կովկասում։ Պատվով կատարելով սովետական հայրենասերի իր պարտքը հարազատ երկրի հանդեպ՝ 1918 թվականին Չարենցը մտավ Կոմունիստական պարտիայի շարքերը և այնուհետև դարձավ նրա քաղաքականության կրքոտ պաշտպանն ու կենսագործողը գրականության մեջ։ Քաղաքացիական պատերազմի հերոիկան, լենինյան գաղափարները և աշխարհաշեն ժողովրդի ռևոլյուցիոն խանդավառությունը կոփեցին Չարենցի գիտակցությունն ու



կամքը, դարձան նրա տարերքը և առնական շեշտ ու նպատակասլացություն հաղորդեցին նրա քնարին։ Հենց այդ մթնոլորտում էլ հոգեպես վերածնվեց բանաստեղծը և դարձավ ռևոլյուցիայի բոցաշունչ երգիչը։

Քաղաքացիական կռիվների լարված օրերին նա գրեց «Սոմա» և «Ամբոխները խելագարված» պոեմները, որոնց մեջ աննախընթաց թափով պատկերված են ժողովրդական ոգու հզոր ծառացումն ու ատելությունը հին, անարդար աշխարհի նկատմամբ, նրա լավատեսությունն ու հաղթանակի հավատը։ Բանաստեղծը բուռն ոգևորությամբ փառաբանեց հնի խորտակումն ու նորի ծնունդը, ռևոլյուցիոն մասսաների ազատագրական պայքարի վերելքը, որից ծաղկում է իր սիրտը որպես «հրափթիթ կարմիր գարուն»։ Նրան անսահման խանդավառություն են պատճառում քաղաքներից ու գյուղերից եկած աշխատավորների քաղաքական ակտիվ գործունեությունը, նրանց նվիրվածությունը ռևոլյուցիային և անձնազոհ հերոսությունը։ Բանաստեղծին հաջողվել է կերտել կոլեկտիվ հերոսի՝ ժողովրդի հավաքական կերպարը և բացահայտել նրա վճռական դերը պատմության մեջ։ Այդ իմաստով առավել նշանակալից են նրա հաջորդ պոեմները

(«Երգ ժողովրդի մասին», «Ամենապոեմ» և այլն), որոնց մեջ պատմական իրադարձությունների լայն ֆոնի վրա պատկերված են աշխատավոր մասսաների ռևոլյուցիոն խոյանքը, նրանց նպատակների ու իդեաների վեհությունը։

Սերտ կապը մարտնչող ժողովրդի և նրա ավանգարդ Կոմունիստական պարտիայի հետ՝ նոր և լուսավոր հորիզոններ բացեց Չարենցի առաջ։ Նա վերջնականապես համոզվեց, որ ճնշված ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի փրկությունը սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի մեջ է, ուստի և իր ամբողջ կյանքն ու ստեղծագործությունը իսպառ դրեց սովետական կարգերի հաստատման ու ամրապնդման համար մղված պայքարին։ Ահա թե ինչու նա ջերմորեն ողջունեց Հայաստանի բանվորների ու գյուղացիների մայիսյան զինված ապստամբությունը դաշնակցական ոհմակների դեմ և հետո՝ ակտիվորեն մասնակցեց փետրվարյան ավանտյուրայի ջախջախմանը։

Սովետական կարգերի հաստատումը Հայաստանում նոր թափ հաղորդեց Չարենցի գրչին և նրան դարձրեց սոցիալիստական հայ կուլտուրայի առաջամարտիկներից մեկը։ Ոգեշնչված մեր ժողովրդի վերածնության



բերկրանքով՝ նա ծավալեց գրական-հասարակական բեղուն գործունեություն, որը տոգորված է ռևոլյուցիոն պաթոսով ու բոլշևիկյան պարտիականությամբ։ Ակտիվորեն ներթափանցելով արդիականության մեջ և գեղարվեստորեն իմաստավորելով տեղի ունեցող իրադարձությունները՝ նա ստեղծեց մեր դարաշրջանին արժանավայել բազմաթիվ երկեր, որոնց մեջ բացահայտված են նոր կյանքի կերտման գեղեցկությունը, սովետական մարդկանց պայքարի ու շինարարության հերոսական դրվագները, նրանց ինտերնացիոնալիզմն ու հայրենասիրության մեծ ուժը։ Դրա հետ միաժամանակ նա հանդես եկավ որպես անցյալի անողոք քննադատ, կապիտալիզմի անհաշտ թշնամի։ Համարձակորեն օգտվելով երգիծանքի սուր զենքից՝ նա սպանիչ ծաղրի ենթարկեց բուրժուա-նացիոնալիստական գաղափարախոսության կրողներին և հատկապես դաշնակցական գործիչներին։ Հիշենք թեկուզ «Կապկազ-թամաշա»-ն, «Երկիր Նաիրի»-ն, «Խմբապետ Շավարշը» և ուրիշ երկեր, որտեղ ռեալիստական խոսքի համոզչությամբ պատկերված են հայ բուրժուազիայի և նրա մարտական պարտիայի ռեակցիոն էությունն ու հակաժողովրդական գործունեությունը։ Ա-

*մեն անգամ, երբ խոսքը վերաբերում է դաշնակցությանը, Չարենցի գրիչը ստանում է սարկաստիկ շեշտ։ Դրանով պետք է բացատրել և՛ «Դաշնակցականներին» մարտաշունչ բանաստեղծության քաղաքական սրությունը, որ հնչում է որպես ահեղ դատավճիռ մեր երեկվա ու այսօրվա թշնամիների հասցեին։*

*Չարենցի բուռն ատելությունը դեպի միջազգային իմպերիալիզմն ու նրա կառքին լծված դաշնակցությունը, բխում էր այն անսահման սիրուց ու նվիրվածությունից, որ նա տածում էր դեպի մեր մեծ Հայրենիքը։ Սոցիալիստական շինարարությունը քաղաքում ու գյուղում, համայնական դաշտերի սերմնացանները, պատանի պիոներների խանդավառ երթը, Սովետական Բանակի հզորությունը և մեր երկրի ժողովուրդների անխախտ բարեկամությունը բազմակողմանի արտացոլում են գտել նրա ստեղծագործություններում, որոնց գլխավոր առանցքը լենինյան դարաշրջանն է ու մեծ Լենինի կերպարը։*

*Լենինյան թեման միշտ էլ հանդիսացել է Չարենցի ստեղծագործական ոգեշնչման անսպառ աղբյուրը։ Նա առաջիններից մեկն էր, որ գեղարվեստական խոսքի հազվագյուտ*



*ուժով կերտեց Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության հիմնադիր Վ. Ի. Լենինի նվիրական կերպարը։ Բնորոշ է, որ Լենինի անվան ու գործի արձագանքը նրա պոեզիայում սկսվում է մեծ Հոկտեմբերի հաղթանակի առաջին տարիներից։ Դեռևս «Ամենապոեմ»-ում ռևոլյուցիոն իրադարձությունների լայն ֆոնի վրա նա պատկերում է Լենինին որպես հանճարեղ ղեկավարի։ Մեծ առաջնորդի հոյակապ կերպարի մեջ նա մարմնավորված է տեսնում այն ամբողջ լավն ու գեղեցիկը, որ ծնել է ռևոլյուցիոն պայքարի մեծահարուստ փորձը։ Նրա անվան հետ են կապված պրոգրեսիվ մարդկության ամենանվիրական խոհերն ու ապրումները, որոնց մեջ ցոլանում են մեր դարաշրջանի ողջ հերոսականությունն ու գեղեցկությունը.*

*Լենինը—*
*Ուղեղն էր մեր դասի.*
*Մեր դասի հոգին էր։*
*Նրա ամեն մասում*
*Հոսում էր մեր դասի արյունը։*
*Նրա մկանն ամեն,*
*Ամեն բջիջը մի—*
*Դասակարգի համար եռում էր. պայքարում էր։*

. . . . . . . . .

*Դասակարգը*
*Դրել էր նրա մեջ իր ամբողջ մեծությունը։*
*Նա եռանդ,*
*Կամք,*
*Եվ գիտություն էր։*

*Լենինի կերպարը, այսպիսով, բանաստեղծը ընկալում ու գեղարվեստորեն բացահայտում է որպես սովետական ժողովրդի պայքարի ու շինարարության խորհրդանիշ, ռևոլյուցիոն դասակարգի ուժի ու հզորության անխորտակելի մարմնացում։ Ահա թե ինչու բազմաթիվ անգամներ անդրադառնալով արդիականության այդ մեծ թեմային, Չարենցը ստեղծել է առաջնորդի կյանքին ու գործունեությանը նվիրված բարձրարվեստ պոեմներ, բալլադներ, մեծ ու փոքր կտավի զանազան գործեր («Բալլադ Վլադիմիր Իլյիչի, մուժիկի և մի զույգ կոշիկի մասին», «Լենին քեռին», «Լենինն ու Ալին», «Լենին» և այլն)։*

*Մեծ է Չարենցի տեղն ու դերը սովետահայ գրականության զարգացման ու հարստացման գործում։ Նրա լավագույն երկերը բանեցին ժամանակի քննությունը և այսօր էլ ոգեշնչում են մեզ կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։*

---

# ՍԵՐՄՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ՃԻՇՏ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՄԲ ԱՊԱՀՈՎԵՆՔ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ

## Զ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

*Բարձր և կայուն բերք ստանալու գործում վճռական դեր է խաղում առողջ, ընտիր և տեսակավոր սերմը։*

*Բազմաթիվ փորձերով ապացուցված է, որ տեսակավոր սերմերով ցանված ցանքերը ավելի լավ, ավելի լրիվ ու առավել ռացիոնալ են օգտագործում հողում եղած ջրի և սննդանյութերի պաշարը, ավելի հաջող են պայքարում անբարենպաստ պայմանների դեմ, հետևաբար տեսակավոր սերմերը ապահովում են ավելի բարձր ու կայուն բերք։ Շրջանայնացված սելեկցիոն ու բարելավված տեղական սորտերը 20—40 և նույնիսկ 60 տոկոսով ավելի բերք են տալիս, քան ոչ սելեկցիոն, հնացած տեսակները։*

*Որպեսզի տեսակավոր սերմերը ցանքային*

բարձր հատկություններ ունենան, նրանց խնամքը պետք է սկսել դեռ սերմնադաշտերից։

Սելեկցիոն և տեղական բարելավված վաղահաս սորտերը հնարավորություն են ստեղծում հացահատիկային և այլ կուլտուրաները (հատկապես աշնանացան ցորենը) մշակել առավել բարձր գոտիներում։

Սովետական ագրոբիոլոգիական գիտությունն ապացուցել է, որ տեսակավոր սերմերի բոլոր արժեքավոր հատկանիշները կարող են երևան գալ այն դեպքում, երբ նրանց աճման ու զարգացման համար ստեղծվում են նպաստավոր պայմաններ։ Ապացուցված է, որ բերրի հողերում աճեցված սերմերի սորտային հատկանիշներն էլ ավելի են լավանում ու սերմերը ձեռք են բերում մի շարք դրական հատկանիշներ (ցրտադիմացկանություն, երաշտադիմացկանություն, հիվանդություններին և վնասատուներին դիմանալու հատկություն) և այլն։ Դրան հակառակ, ամենաբերքատու տեսակներն անգամ անբարենպաստ պայմաններում աճեցնելիս կորցնում են իրենց դրական հատկանիշները։ Հետևաբար յուրաքանչյուր կոլտնտեսություն և բրիգադա պետք է հաշվի առնեն սերմերի ու միատարր լինելու հանգամանքը և առանձ-



նացնեն բարձր բերք ապահովող սերմնադաշտերից ստացված տեսակավոր սերմացու, ստուգեն ցանքային հատկանիշները ու ապա օգտագործեն որպես սերմացու։

Ապացուցված է նաև, որ ավելի բարձր բերք կարելի է ստանալ, երբ ցանքը կատարվում է թարմացված սերմերով։ Այսպես, օրինակ, նույն տեսակի էլիտային սերմերը ավելի բարձր բերք են տալիս, քան առաջին վերարտադրությանը պատկանող սերմերը, իսկ դա իր հերթին ավելի բարձր է, քան երկրորդ վերարտադրությանը պատկանող սերմերը և այդպես, որքան վերարտադրության սերմերը հնանում են, այնքան բերքը պակասում է։

Նշված փաստերն ապացուցելու համար բերենք մի քանի օրինակներ։ Նոր Բայազետի շրջանի Կարմիր գյուղի Սպարտակի անվան կոլտնտեսությունը 1955 թվականին աշնանացան ցորենի ուկրաինկա տեսակի առաջին վերարտադրության ընտիր սերմերով ցանված տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 20 ցենտներ ամբարային բերք, նույն տեսակի երկրորդ վերարտադրության սերմերով ցանված ամեն մի հեկտարից 17,7 ցենտներ, իսկ չթարմացված անհայտ վերարտադրությանը պատկանող սերմերով

ցանված տարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 12,7 ցենտներ բերք։

Սիսիանի շրջանի Նորավան գյուղի Կիրովի անվան կոլտնտեսությունը երաշտի պայմաններում աշնանացան ցորենի տեղական բարելավված կարմիր-ալֆահատ տեսակի թարմացված առաջին վերարտադրության սերմերով կատարված ցանքի ամեն մի հեկտարից հավաքեց 16,31 ցենտներ ընտիր տեսակի սերմացու, նույն տեսակի երկրորդ վերարտադրության սերմերով ցանված յուրաքանչյուր հեկտարից՝ 14,51 ցենտներ, իսկ անհայտ վերարտադրության, չթարմացված սերմերով ցանված տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացավ 12,78 ցենտներ։ Գարնանացան գարու լավացված առաջին վերարտադրության սերմերով ցանված ցանքատարածության ամեն մի հեկտարից հավաքվեց 20,71 ցենտներ, երկրորդ վերարտադրության սերմերով ցանված յուրաքանչյուր հեկտարից՝ 15,91 ցենտներ, իսկ չթարմացված առավել երկար ժամանակ մշակության մեջ եղած սերմերով ցանված տարածություններից՝ 14,85 ցենտներ բերք։

Թալինի շրջանի Արեգ գյուղի «Ինտերնացիոնալ» կոլտնտեսությունը աշնանացան ցորենի տեղական բարելավված «սպիտա-



կահատ» տեսակի թարմացված սերմերով ցանված տարածության ամեն մի հեկտարից ստացել է 16 ցենտներ, իսկ նույն սորտի երկար ժամանակ արտադրության մեջ եղած սերմերով ցանված տարածության յուրաքանչյուր հեկտարից 10,42 ցենտներ բերք։

Նման օրինակներ կարելի է բերել նաև Ախտայի շրջանի Ցամտան գյուղի, Բասարգեչարի շրջանի Նորակերտ գյուղի, Արթիկի շրջանի Վարդաքար գյուղի, Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի կոլտնտեսություններից։

Միաժամանակ պետք է նշել, որ առաջավոր կոլտնտեսություններն այդպիսի արդյունքների են հասել ոչ միայն տեսակավոր ու թարմացված սերմերով ցանք կատարելու միջոցով, այլ նաև ագրոտեխնիկան ճիշտ կիրառելու շնորհիվ։ Այդ կոլտնտեսություններում ցանքը կատարել են ժամանակին, բարելավել են ցանքերի մշակությունը, բերքը հավաքել են ժամանակին և անկորուստ։

Սակայն դեռ ոչ բոլոր մեքենա-տրակտորային կայանների ղեկավարներն ու կոլտնտեսությունների վարչություններն են պատշաճ ուշադրություն դարձնում սերմնաբուծության գործի ճիշտ կազմակերպման վրա։ Մի շարք կոլտնտեսություններ, չնայած, որ լավացված սերմացուներ են ցանում, բայց

ագրոտեխնիկական միջոցառումները ժամանակին ու որակով չկատարելու, բերքահավաքի ժամկետները երկարաձգելու հետևանքով տարիներ շարունակ ցածր բերք են ստանում, օրինակ, Սիսիանի շրջանի Անգեղակոթ, Վեդու շրջանի Բիրալու, Ղափանի շրջանի Արծվանիկ, Ազիզբեկովի շրջանի Սայլախլու, Միկոյանի շրջանի Նվիին գյուղերի սերմնաբուծական կոլտնտեսությունները։

Պարտիան և կառավարությունը կոլտնտեսությունների և սովխոզների առջև խնդիր են դրել՝ ապահովել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների ցանքերը ռայոնացված սեփական տեսակավոր սերմերով։ Սերմացուի առանձնացման նոր կարգը լրիվ հնարավորություն է տալիս կոլտնտեսություններին ու սովխոզներին առաջին հերթին իրենց ապահովելու սեփական սերմերով։

Ընդունված կարգի համապատասխան, սերմացուն պետք է կուտակել առաջին հերթին սերմնադաշտերից ստացված սորտային ցանքերի բերքից, իսկ պակասի դեպքում այն լրացնել բարձր բերքատու ցանքատարածություններից ստացված սերմերով։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններն ու սովխոզները հագեցված են նորագույն տեխնիկայով։ Նրանք բոլոր հնարավորություն-



ներն ունեն, ոչ միայն կիրառելու հողի մշակման կատարելագործված եղանակներ, այլև մշակելու բարձր բերքատու սելեկցիոն ու տեղական լավագույն տեսակներ, ապահովելով բարձրարժեք սերմերի ստացումը։

Կոլտնտեսությունները սեփական տեսակավոր սերմերով ապահովելու գործը կապված է հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը սեղմ ժամկետում և անկորուստ անցկացնելու հետ։

Գյուղատնտեսական կուլտուրաների բարձր բերք ապահովելու գործում կարևոր նշանակություն ունի սերմանյութի որակը և հասակը։ Բոլոր դեպքերում պետք է ցանել հասունացած, լավ պահված, առողջ և տեսակավոր սերմեր։ Երբ սերմերը ստացվում ու ցանվում են բերքահավաքից անմիջապես հետո (հատկապես աշնանացանի դեպքում), նրանք լիակատար ու համերաշխ ծիլեր են տալիս, քանի որ նոր հավաքված հատիկը լիակատար ծլունակություն չի ունենում։ Պետք է պայմաններ ստեղծել սերմացուի համար առանձնացվող հատիկի ծլունակությունն աստիճանաբար բարձրացնելու։ Բոլոր դեպքերում էլ լրացուցիչ հասունացման չհասած սերմերը ծլում են ոչ-միաժամանակ, այդպիսի դեպքում բույսերը զարգանում ու

հասունանում են անհամաչափ և դրա պատճառով տեղի է ունենում բերքի նվազում ու նրա որակի վատացում։

Ռեսպուբլիկայի շատ շրջաններում աշնանացանը սկսում են ավելի վաղ կամ այն համընկնում է բերքահավաքի աշխատանքներին։ Որպեսզի ցանվող սերմերի ծլունակությունը բարձր լինի, անհրաժեշտ է սերմերը տաքացնել, օդափոխության ենթարկել և չորացնել, ինչպես ընդունված է ասել, սերմերը օդաջերմային մշակման ենթարկել։ Հարկավոր է հատիկները պահեստներում կամ բացօդյա տարածություններում բարակ շերտով փռել և հաճախակի խառնել, կարելի է նաև քամհարի միջոցով քամհարել։

Այս տարվա աշնանացանի համար պետության միջոցներից կոլտնտեսություններին բաց է թողնված 14.000 ցենտներից ավելի հացահատիկային կուլտուրաների բարձրորակ ու տեսակավոր սերմացու։ ՄՏ կայանների և կոլտնտեսությունների ղեկավարների առաջնահերթ խնդիրն է՝ ժամանակին ստանալ բաց թողնված սերմերը և այն ցանել լավ նախապատրաստված հողամասերում։

ՕԳՏԱԳՈՐԾԻՐ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

---

## ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ

### (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

Մոտենում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-ամյակը։ Մեր երկրի միլիոնավոր աշխատավորներ այս օրերին էլ ավելի են լարում իրենց ուժերը մեծ տոնը արժանավայել դիմավորելու համար։ Ահա մի շարք թվեր ու փաստեր, որոնք ցույց են տալիս երկրի առանձին արդյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվների ձեռք բերած հաջողությունները Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի նախօրյակին։

✪ 1933 թվականի հունիսին Չելյաբինսկի տրակտորային գործարանի կոնվեյերից իջավ առաջին տրակտորը։ Այդ պահից ի վեր իր արտադրած լավագույն տրակտորների շնորհիվ գործարանը լայն հռչակ է ձեռք բերել ոչ միայն մեր երկրում, այլև նրա սահմաններից դուրս։ Մի քանի օր առաջ գործարանը երկրին հանձնեց իր գործարկման պահից հաշված 300 հազարերորդ տրակտորը։

✪ Վերջերս Կազանում ավարտվեց հզոր ալրաղաց

կոմբինատի շինարարությունը։ Կոմբինատը նախատեսված է մեկ միլիոն փութ հացահատիկ երկար ժամանակով պահպանելու և մեկ լրիվ օրվա ընթացքում 550 տոննա տեսակավոր ալյուր պատրաստելու համար։ Ալյուրի պատրաստման ամբողջ պրոցեսը լրիվին մեխանիզացված և ավտոմատացված է։

✪ Մինսկ քաղաքի արդյունաբերությունը ժամկետից յոթ օր շուտ կատարեց այս տարվա ութ ամսվա արտադրական պլանը և երկրին տվեց 184 միլիոն ռուբլու արտապլանային ավտոմեքենաներ, տրակտորներ, գործիքներ, կոշկեղեն, և այլն։ Նախահոկտեմբերյան սոցմրցման մեջ առանձնապես լավագույն ցուցանիշների հասավ Մինսկի տրակտորային գործարանի կոլեկտիվը։ Մի քանի օր առաջ այստեղ պատրաստվեց «Բելառուս» մարկայի 50 հազարերորդ տրակտորը։ Ինչպես հայտնի է, տրակտորային գործարանը շարք է մտել սրանից չորս տարի առաջ։

✪ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի 40-ամյակը արտադրական աչքի ընկնող հաջողություններով է դիմավորում Խարկովի Կիրովի անվան գործարանի կոլեկտիվը։ Վերջերս գործարանը ժամկետից շուտ կատարեց Նովոսիբիրսկի հիդրոէլեկտրակայանի համար նախատեսված նախավերջին, վեցերորդ հիդրոտուրբինը, որի հզորությունը հավասար է 58,6 հազար կիլովատի։

✪ Ամփոփվեցին Ալմա-Աթայի և Կիրգիզական ժողտնտխորհների սոցիալիստական մրցության առա-



ջին արդյունքները։ Առաջնությունը նվաճել են ալմաաթացիները։ Նրանք ութ ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել են 105,5 տոկոսով։

Կիրգիզական ժողտնտխորհի ձեռնարկությունները ութ ամսվա արտադրական պլանը կատարել են 102,8 տոկոսով։

✪ Այս տարվա սկզբին Ադրբեջանի «Կարադաղնեֆթ»-ի իններորդ հանքի կոլեկտիվը Ադրբեջանի բոլոր նավթագործներին կոչ արեց սոցիալիստական մրցություն ծավալել ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի տոնակատարության։ Երիտասարդ հանքի կոլեկտիվը մրցության մեջ մեծ հաջողությունների է հասել։ Վարպետներ Թ. Աբբասովի և Ն. Բաբաևի առաջավոր բրիգադաները պլանից դուրս տվել են 18 հազար տոննա նավթ և միլիոնավոր խորանարդ մետր գազ։ Ընդհանուր առմամբ այդ նավթահանքը նավթի օրական հանույթը ավելացրել է մոտ երկու անգամ, գազինը՝ երեք անգամ։

✪ Լենինգրադի ժողտնտխորհում այս տարվա առաջին կիսամյակում կտրուկ կերպով պակասել է հետ մնացող ձեռնարկությունների թիվը։ Մանր մեքենաշինության մեջ և արդյունաբերության մի շարք այլ առաջատար ճյուղերում այժմ չկա ոչ մի հետ մնացող գործարան։ Այնտեղ շարունակվում են լուրջ աշխատանքներ գնալ նոր, բարձր արտադրողական մեքենաներ, դազգահներ և ապարատներ ստեղծելու ուղղությամբ։ Շատ ձեռնարկություններում սարքավո-

ռումներ են պատրաստվում աշխարհում առաջին ատոմային սառցահատի համար։

☆ «Կարա-բողազսուլֆատ» կոմբինատի կոլեկտիվը սոցիալիստական մրցության մեջ մտնելով ի պատիվ Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի, աշխատանքային մեծ հաղթանակ է ձեռք բերել։ Ժամկետից շուտ կատարվել է սուլֆատի հանույթի տարեկան պլանը։ Երկիրն արդեն ստացել է 16.300 տոննա ավելի թանկարժեք քիմիական հումք, քան անցյալ տարի։

✪ Նախատոնական այս օրերին լավ արդյունքների է հասել Տաջիկստանի պահածոների արդյունաբերությունը։ Ութ ամսվա ընթացքում պլանից ավելի արտադրված է ավելի քան մեկ միլիոն տուփ պահածո։

✪ Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանում շահագործման հանձնվեց «Օկսոլ» օլիֆ արտադրող նոր ցեխը։ Այդ ցեխի արտադրանքը իր որակով ետ չի մնում բնական օլիֆից։ Հայաստանի համար օլիֆը հազվագյուտ նյութ է, որը անցյալում ներմուծվում էր մյուս ռեսպուբլիկաներից։ Ցեխի կոլեկտիվը մրցության մեջ մտնելով, պարտավորվել է «Օկսոլ» օլիֆի արտադրման տարեկան պլանը գերակատարել։

✪ Քաջարանի Պղնձա-մոլիբդենային կոմբինատի կոլեկտիվը ութ ամսվա արտադրական պլանը կատարեց 109,2 տոկոսով։ Կոլեկտիվը պարտավորվել է 11 ամսվա արտադրական պլանը կատարել Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի օրը, իսկ տարեկանը՝ դեկտեմբերի 5-ին։

---

ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ

---

# ԿԱՊԻՏԱԼԻԶՄԻ ՀԵՏ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՍՈՑԻԱԼԻԶՄՆ ԱՆՊԱՐՏԵԼԻ Է

## ՅՈՒ. ՕՍՏՐՈՎԻՏՅԱՆՈՎ

Մեծ Հոկտեմբերի ծնունդ հանդիսացող Սովետական պետությունն իր առաջին քայլերից սկսած հետևողականորեն և վճռական կերպով հանդես եկավ պատերազմների դեմ, այնպիսի քաղաքականության դեմ, որը ռազմական կոնֆլիկտների է հասցընում, պայքար մղեց խաղաղության, ժողովուրդների միջև բարի դրացիական հարաբերությունների, տարբեր սոցիալական սիստեմներ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության համար։

Սովետական պետությունը միշտ էլ ձգտել է խաղաղ հարաբերություններ հաստատել կապիտալիստական երկրների հետ, համառորեն ամրապնդել ու ընդլայնել է առևտրական և տնտեսական այլ կապերը սոցիալիստական ու կապիտալիստական սիստեմ-

ների միջև, վճռականորեն պայքարել և պայքարում է ռազմական ավանտյուրաների իմպերիալիստական քաղաքականության դեմ։

***

Անցյալի և ներկայի բաղդատումը ցայտուն կերպով ցույց է տալիս սոցիալիստական էկոնոմիկայի վճռական առավելությունը, նոր հասարակարգի վիթխարի հնարավորությունները։

Ռուսաստանը խոր հակասությունների երկիր էր։ Կապիտալիստական արտադրության համակենտրոնացման բարձր աստիճանով բնութագրվելու հետ միասին, Ռուսաստանի էկոնոմիկան միաժամանակ շաղկապված էր ֆեոդալական մնացուկների թելերով և աչքի էր ընկնում իր ծայրահեղ հետամնացությամբ։ Եվրոպայի և Ամերիկայի առաջավոր կապիտալիստական երկրները Ռուսաստանից շատ էին առաջ անցել ինչպես արտադրության չափերով և մակարդակով, այնպես էլ աշխատանքի արտադրողականությամբ։ Աշխատանքի արտադրողականությունը ռուսական արդյունաբերության մեջ 4,9 անգամ ցածր էր, քան Անգլիայում,



և 9 անգամ ցածր, քան ԱՄՆ-ում։ Ռուսաստանի բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ կազմում էր ընդամենը 2,6 տոկոս։

Էլեկտրաէներգիայի արտադրությամբ Ռուսաստանը այն ժամանակ գրավում էր 15-րդ տեղն աշխարհում և ետ էր մնում ոչ միայն ԱՄՆ-ից, Գերմանիայից, Անգլիայից, Ֆրանսիայից, այլև Կանադայից, Իտալիայից, Ճապոնիայից, Նորվեգիայից, Շվեյցարիայից և մի քանի այլ երկրներից։ Աշխարհում հինգերորդ տեղը գրավելով պողպատի, չուգունի, գլանվածքի և քարածխի արտադրությամբ, Ռուսաստանը չուներ սեփական ավտոմոբիլային և տրակտորային արդյունաբերություն և ստիպված էր բավարարվել արտասահմանից կատարվող տրակտորների և ավտոմոբիլների ներմուծումով։ Ցարական Ռուսաստանի հետամնացությունը հատկապես մեծ էր զարգացած կապիտալիստական երկրների հետ բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրության արտադրանքի համեմատությամբ։ Այդ տեսակետից Ռուսաստանը ետ է մնում ԱՄՆ-ից 21,4 անգամ, Անգլիայից՝ 14 անգամ, Գերմանիայից 13 անգամ։

Միջազգային իմպերիալիզմի կողմից հրահրած առաջին համաշխարհային պատերազմը շատ տարիներ ետ շպրտեց Ռուսաստանի առանց այն էլ հետամնաց էկոնոմիկան։ 1917 թվականին Ռուսաստանի բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ 2,6 տոկոսից ընկավ մինչև 1,7 տոկոսի։ Արդյունաբերությունը և գյուղատնտեսությունը արագընթաց վայրէջք էին ապրում։ Երկրում տիրում էր տնտեսական փլուզվածությունը։ Ռուսաստանին սպառնում էր զարգացած իմպերիալիստական երկրների գաղութ, ագրարային-հումքային բազայի վերածվելու վտանգը։

Կատաստրոֆիկ դրությունից դուրս գալու միակ ելքը կայանում էր երկրի էկոնոմիկայի արմատական ռևոլյուցիոն վերափոխման, կապիտալիստական արտադրական հարաբերությունների լիկվիդացման, և մի այնպիսի նոր հասարակական կարգի ըստեղծման մեջ, որը ընդունակ լիներ արտադրողական ուժերի զարգացմանը լայն ասպարեզ տալ։

Կոմունիստական պարտիան և նրա առաջնորդ Վ. Ի. Լենինը, սովետական ժողովրդին առաջնորդեցին գրոհի ընդդեմ բուրժուա-կալվածատիրական կարգերի։ Կոմու-



նիստական պարտիայի ղեկավարությամբ բանվոր դասակարգը դաշինք կնքած աշխատավոր գյուղացիության հետ, կատարեց սոցիալիստական ռևոլյուցիա, ճնշեց շահագործողների դիմադրությունը, սկսեց նոր սոցիալիստական հասարակարգի շինարարությունը։ Մեր պետության համար դժվար էր սկզբնական ժամանակաշրջանում։ Բավական է ասել, որ 1920 թվականին ՍՍՌՄ-ը կապիտալիստական աշխարհից ետ էր մնում չուգունի արտադրությամբ՝ 628 անգամ, պողպատի ձուլումով՝ 356 անգամ, քարածխի հանույթով՝ 135 անգամ։

Այդ ծանր պայմաններում Վ. Ի. Լենինը անհաղթահարելի համոզվածություն արտահայտեց կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ նոր սոցիալիստական հասարակարգի վերջնական հաղթանակի մասին։ Նա պարտիային և սովետական ժողովրդին զինեց սոցիալիզմի շինարարության հանճարեղ պլանով, որը նախատեսում էր երկրի ինդուստրիալիզացիան և էլեկտրիֆիկացիան, գյուղատնտեսության կոոպերացումը։ Լենինյան ծրագիրը իր կոնկրետ մարմնացումը ստացավ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլաններում։

Սովետական ժողովրդի հաստատ վճռականությունը մրցության մեջ մտնելու այնպիսի խոշորագույն կապիտալիստական երկրների հետ, ինչպիսիք են՝ ԱՄՆ-ը, Անգլիան, Գերմանիան, Ֆրանսիան, իր ժամանակ բուրժուազիայի լագերում ծաղրանքի փոթորիկ առաջ բերեց։ Բուրժուական տընտեսագետները, քաղաքական գործիչները մոլեգնորեն հանդես էին գալիս ընդարձակ թվական «տվյալներով» և հայտարարություններով, փորձելով ապացուցել սովետական պլանների ոչ ռեալ և ֆանտաստիկ լինելը, կոմունիստներին անվանում էին «ուտոպիստներ»։ Լենինի և կոմունիստական պարտիայի մշակած պլանը, ըստ որի մեր Հայրենիքը հետամնաց ագրարային երկրից պետք է վերածվեր հզոր ինդուստրիալ տերության, իրենից ներկայացնում էր ստեղծագործական մեծ պայքարի և բոլոր ներքին ու արտաքին քաղաքական ու տնտեսական պայմանների խիստ գիտական անալիզի զուգակցում։ Դա ֆանտաստիկա չէր, ինչպես մտածում էին կապիտալիզմի գաղափարախոսները, այլ պատմական զարգացման իսկական տենդենցների գիտական կանխատեսում, իրականություն, որին ծնունդ էին տվել նոր հասարակարգի մեծ կենսական ուժերը։



Վ. Ի. Լենինի կանխատեսումը լիովին արդարացրեց իրեն։ Նախապատերազմյան ժամանակաշրջանում սոցիալիստական արդյունաբերությունը զարգանում էր բացառիկ արագ տեմպերով, որոնք հայտնի չէին կապիտալիզմին՝ նրա զարգացման նույնիսկ ամենաբարենպաստ ժամանակաշրջաններում։ 1939 թվականին ՍՍՌՄ-ի արդյունաբերական արտադրությունը 1913 թվականի համեմատությամբ ավելացավ ավելի քան 7,5 անգամ, իսկ խոշոր արդյունաբերության արտադրանքը՝ ավելի քան 10 անգամ. այդ նույն ժամանակաշրջանում ամբողջ կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրությունը աճեց միայն 43 տոկոսով։ ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրությունը 1913 թվականից մինչև 1939 թվականը ավելացավ ընդամենը 65 տոկոսով, Անգլիայինը՝ 21 տոկոսով, Ֆրանսիայինը՝ 11 տոկոսով։

Վ. Ի. Լենինը սովորեցնում էր, որ աշխատանքի արտադրողականությունը վերջին հաշվով ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակի համար։ Նախապատերազմյան ժամանակաշրջանում աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը ՍՍՌՄ-ում ցայտուն և համոզիչ

կերպով ապացուցեցին սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունները։ 1928 թվականից մինչև 1937 թվականը աշխատանքի արտադրողականությունը ՍՍՌՄ արդյունաբերության մեջ բարձրացավ ավելի քան 2,5 անգամ, այդ նույն ժամանակ աշխատանքի արտադրողականությունը խոշորագույն կապիտալիստական երկրում՝ ԱՄՆ-ում ընկավ 2 տոկոսով։

Երկրի ինդուստրիալ հզորության հիմնական ցուցանիշը էլեկտրաէներգիայի, պողպատի, նավթի և քարածխի արտադրության մակարդակն է։ 1913 թվականից մինչև 1940 թվականը էլեկտրաէներգիայի արտադրությունը ՍՍՌՄ-ում ավելացել է 1,9 միլիարդ կիլովատ-ժամից մինչև 48,3 միլիարդ կիլովատ-ժամի, քարածխի հանույթը 29,1 միլիոն տոննայից մինչև 165,9 միլիոն տոննայի, պողպատի ձուլումը 4,2 միլիոն տոննայից մինչև 18,3 միլիոն տոննայի, նավթի հանույթը 9,2 միլիոն տոննայից մինչև 31,1 միլիոն տոննայի։

Նախապատերազմյան ժամանակաշրջանում կապիտալիզմի և սոցիալիզմի խաղաղ մրցության գլխավոր արդյունքը եղավ այն, որ ՍՍՌՄ-ը 1938 թվականին արդյունաբերական արտադրանքի ծավալով դուրս եկավ



Եվրոպայում առաջին տեղը, իսկ աշխարհում երկրորդ տեղը։ Հենվելով սոցիալիստական արտադրության նվաճումների վրա, Սովետական Միության Կոմունիստական պարտիան 18-րդ համագումարում խնդիր դրեց հասնել և անցնել գլխավոր կապիտալիստական երկրներից տնտեսապես, այսինքն բնակչության ամեն մի շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի արտադրությամբ։

Այսպիսին էին սովետական ժողովրդի հոյակապ հաջողությունները կապիտալիզմի հետ տնտեսական մրցության մեջ, երբ մեր մարդկանց ստեղծարար աշխատանքը խախտըվեց գերմանական իմպերիալիզմի ավազակային հարձակումով։

Պատերազմը արտասովոր կերպով երևան հանեց սոցիալիստական հասարակարգի կենսունակությունը։ Հետպատերազմյան ժամանակաշրջանի ամենակարևոր պատմական իրադարձությունը հանդիսացավ կապիտալիզմի կործանումը Եվրոպայի ու Ասիայի մի շարք երկրներում և տնտեսության համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումը, որը հենվում է աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման և համաշխարհային սոցիալիս-

տական շուկայի վրա։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմը ընդգրկել է աշխարհի տերիտորիայի 26 տոկոսը, երկրագնդի բնակչության 35 տոկոսը, համաշխարհային արդյունաբերական արտադրության 30 տոկոսը։ Սոցիալիզմի և կապիտալիզմի մրցակցությունը մուտք է գործել նոր, բարձրագույն էտապ։

Երկու համաշխարհային սիստեմների մրցության ընթացքում կտրուկ կերպով դրսևորվել են սոցիալիստական էկոնոմիկայի առավելությունները։ Այդ առավելությունները արտահայտվում են ամենից առաջ տնտեսական զարգացման տեմպերի մեջ։ 1950 թվականի համեմատությամբ սոցիալիզմի երկրների արդյունաբերական արտադրությունը 1955 թվականին աճել է 95 տոկոսով։ Կապիտալիստական երկրները իրենց համար այդ առավել բարենպաստ ժամանակաշրջանում արդյունաբերական արտադրությունը կարողացան ավելացնել միայն 31 տոկոսով։ Հետևաբար սոցիալիստական երկրների արտադրության աճի տեմպերը ավելի քան երեք անգամ գերազանցեցին կապիտալիստական արտադրության աճի տեմպերին։

Դժկամորեն, ամեն տեսակի վերապահում-



ներով միայն այդ բանը ստիպված էին ընդունել մեր բացահայտ թշնամիները Արևմուտքում։

Տնտեսության և արդյունաբերության գծով գիտական հետազոտությունների Ամերիկյան խորհրդի զեկուցագրում, որը հրապարակվեց 1957 թվականին ԱՄՆ-ում, ընդունվում է, որ Սովետական Միությունում արտադրության ընդհանուր աճի տարեկան տեմպերը զգալիորեն ավել են, քան Միացյալ Նահանգներում, առանձնապես արդյունաբերական արտադրության մեջ։ Ոչ հեռու անցյալում ԱՄՆ-ի կոմպանիաներից մեկի պրեզիդենտ Գրեյը Վաշինգտոնի ռեկլամային ակումբում արտասանած իր ճառում հայտարարեց, որ սովետական էկոնոմիկայի աճի տեմպերը առնվազն երկու անգամ բարձր են ամերիկյանից։ «... Եթե մենք չենք կարող տալ 3 տոկոսից ավելին և եթե այդպիսի տեմպերով զարգացումը հանդիսանում է մեր ազգային իդեալը, ապա արդյունաբերական հզորության բնագավառում գերակշռության համար մրցությունը կշահի կոմունիստական աշխարհը»,— ասաց Գրեյը։

Երբ բուրժուական տնտեսագետները և կապիտալիստական գործամոլները փորձում

են սևացնել սոցիալիզմի տնտեսական հաջողությունները, նրանց սիրած փաստարկն է դառնում այն բանի վկայակոչումը, թե ՍՍՌՄ արտադրության զարգացման բարձր տեմպերը իբր թե զուգակցում են արդյունաբերական արտադրանքի բացարձակ աճի ծայրահեղ ցածր մակարդակի հետ։ Նմանօրինակ պնդումը ընդհանուր ոչինչ չունի փաստերի հետ։ Իրականում բացարձակ աճի չափերով ՍՍՌՄ-ը վաղուց անցել է Անգլիային, ԳՖՌ-ին, Ֆրանսիային, իսկ մի քանի կարևորագույն ցուցանիշների գծով առաջ է գնում նաև ԱՄՆ-ից՝ կապիտալիստական աշխարհի ամենախոշոր արդյունաբերական տերությունից։ 1951—1955 թվականներին արդյունաբերական արտադրանքի բացարձակ աճը ՍՍՌՄ-ում կազմեց. քարածխի գծով՝ 129 միլիոն տոննա, չուգունի գծով՝ 14,1 միլիոն տոննա, պողպատի գծով՝ 18 միլիոն տոննա։ Այդ նույն ժամանակամիջոցում ԱՄՆ-ում քարածխի բացարձակ աճը ընկավ 62,3 միլիոն տոննայով, չուգունի բացարձակ աճը ԱՄՆ-ում հավասարվեց 10,8 միլիոն տոննայի, պողպատինը՝ 17,9 միլիոն տոննայի։

Արդյունաբերական արտադրանքի բացարձակ աճի մեծացող չափերը հանդիսանում



են սոցիալիստական արտադրության ծավալի անընդհատ ավելացման աղբյուրը։ 1956 թվականին մեր երկրում արտադրվել է 192 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, քարածխի հանույթը կազմել է 429 միլիոն տոննա, նավթինը՝ 83,8 միլիոն տոննա, ձուլվել է 48,6 միլիոն տոննա պողպատ։ Սովետական էկոնոմիկայի հաջողությունների շնորհիվ ՍՍՌՄ-ի բաժինը համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մեջ աճել է 1937 թվականի 9,2 տոկոսից մինչև 19 տոկոսի՝ 1955 թվականին։ Այդ հաջողությունները ավելի մեծ կլինեին, եթե մեր երկիրըստիպված չլիներ իր գոյության 40 տարիներից առնվազն 18 տարին կորցնել իր վրա փաթաթված պատերազմների և հետագայում ժողովրդական տնտեսության վերականգնման վրա։

Սոցիալիստական էկոնոմիկայի հետագա վերելքի և կապիտալիզմի հետ սոցիալիզմի տնտեսական հաջող մրցության համար խոշոր նշանակություն ունեն ՍՄԿԿ 20-րդ համագումարի որոշումները։ Այդ համագումարը որպես անմիջական պրակտիկ խնդիր առաջ քաշեց՝ պատմական կարճ ժամանակամիջոցում հասնել և անցնել գլխավոր կապիտալիստական երկրներին բնակչության

ամեն մի շնչին ընկնող արտադրանքի գծով։ Համագումարի կողմից նշվեցին սոցիալիզմի և կապիտալիզմի խաղաղ տնտեսական մրցության մեջ վերջնական հաղթանակ նվաճելու ուղիները։

ՍՍՌՄ-ի գլխավոր տնտեսական խնդրի լուծումը պահանջում է սովետական ժողովրդի լուրջ ջանքերը մեր արդյունաբերության և գյուղատնտեսության արագ և բազմակողմանի զարգացման գործում։ Տնտեսական տեսակետից մեր երկիրը դեռևս ետ է մնում մի քանի առաջատար կապիտալիստական երկրներից։ 1955 թվականին բնակչության ամեն մի շնչին ընկնող ամբողջ արտադրանքի արտադրության տեսակետից ՍՍՌՄ-ը ետ էր մնում ԱՄՆ-ից 2,5 անգամ, Անգլիայից՝ 70 տոկոսով։ Սակայն այդպիսի համեմատություններ անելով հանդերձ, պետք է հաշվի առնել, որ վերջին տարիներում գլխավոր կապիտալիստական երկրների արտադրության աճը որոշվում է էկոնոմիկայի ռազմականացումով։ Վերջերս ՄԱԿ-ի Գլխավոր քարտուղար Դագ Համերշելդը Միավորված Ազգերի Կազմակերպության Տնտեսական և Սոցիալական խորհրդի սեսիայում ստիպված էր ընդունել, որ կապիտալիստական աշխարհի բոլոր երկրներում 1956 թվականը նշանավորվեց «արտադրության աճի տեմպերի դանդաղումով՝ համեմատած սրանից մեկ կամ երկու տարի առաջվա հետ»։ Բայց, եթե նույնիսկ սոցիալիստական և կապիտալիստական երկրների արտադրության աճի տեմպերը մնան նույնը, Սովետական Միությունը արդեն 6-րդ հնգամյակում կարող է հասնել Ֆրանսիային և Անգլիային՝ բնակչության յուրաքանչյուր շնչին ընկնող արդյունաբերական արտադրության չափերով։



Ամբողջ սովետական ժողովուրդը վիթխարի խանդավառությամբ արձագանքեց Կոմունիստական պարտիայի կոչին հասնել ԱՄՆ-ին բնակչության յուրաքանչյուր մեկ շնչին ընկնող մսի, կաթի և յուղի արտադրությամբ։ Դա մոտակա տարիների խնդիր է, և սովետական ժողովուրդը հաջողությամբ այն կլուծի։

Սոցիալիզմի երկրների ժողովուրդները հավատով լի են նայում ապագային։ Նրանց հավատը հիմնված է սոցիալիստական սիստեմի վերջնական հաջողության անխախտ համոզմունքի վրա, որի մեծ առավելությունները ապացուցվել են Սովետական պետության 40-ամյա փորձով, համաշխարհային պատմության ամբողջ ընթացքով։

———

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀՈԿՏԵՄԲԵՐ ԱՄՍՎԱ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ (ԴԵՊԻ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԸ).

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Զեկուցում Արևելքի ժողովուրդների կոմունիստական կազմակերպությունների Համառուսաստանյան 2-րդ համագումարում 22 նոյեմբերի 1919 թ., *Երկեր, Հատոր 30 էջ 174—190, Հայպետհրատ, 1951*։

Վ. Ի. ԼԵՆԻՆ— «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ», *Երկեր, Հատոր 31, էջ 5—8, Հայպետհրատ, 1952*։

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացումը, *ՍՄԿԿ 20-րդ համագումարին տված զեկուցումից, էջ 108—121, Հայպետհրատ, 1956*։

Սոցիալիստական էկոնոմիկան վստահորեն առաջ



է քայլում, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Սովետական Հայաստան»-ի 1957 թվականի հուլիսի 23-ի համարում*։

*Ս. ԿԱՖՏԱՆՈՎ*— Հոկտեմբերը և կուլտուրական ռևոլյուցիան *ՍՍՌՄ-ում տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 7-ի համարում*։

## 2. ԲԱՐՁՐ ՑՈՒՑԱՆԻՇՆԵՐՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 40-ԱՄՅԱԿԻ ՊԱՏՎԻՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշումը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 40-րդ տարեդարձի տոնակատարության նախապատրաստման մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 17-ի համարում*։

Աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը համաժողովրդական գործ է, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 5-ի առաջնորդողը*։

Դեպի մեծ Հոկտեմբերի 40-ամյակը, *նյութեր ստանձնած պարտավորությունները կատարելու վերաբերյալ, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի համարներում*։

Անբերի կատարենք Մեծ Հոկտեմբերի 40-ամյակի պատվին ստանձնած պարտավորությունները, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1957 թվականի 18-րդ համարում*։

### 3. ԵՂԻՇԵ ՉԱՐԵՆՑԻ ԾՆՆԴՅԱՆ 60-ԱՄՅԱԿԸ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետում, *որոշում Ե. Չարենցի 60-ամյակը տոնելու մասին. տպագրված «Գրական թերթ»-ի 1957 թվականի փետրվարի 7-ի համարում։*

Ս. ԱՂԱԲԱԲՅԱՆ—*Սովետահայ մեծ բանաստեղծը, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 20-ի համարում։*

Գ. ՍԱՐԳՍՅԱՆ—Մեծատաղանդ բանաստեղծը, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1957 թվականի 18-րդ համարում։*

### 4. ՀԱՅՏՆԱԲԵՐԵՆՔ ԵՎ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԵՐՔԻՆ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Զեկուցում ՍՄԿԿ 20-րդ համագումարին, *էջ 76—80, Հայպետհրատ, 1956։*

Աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացումը համաժողովրդական գործ է, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 5-ի առաջնորդողը։*

Լայն ճանապարհ արտադրության նորարարներին, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 24-ի առաջնորդողը։*



### 5. ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵՆՔ ԲԱՄԲԱԿԻ, ԽԱՂՈՂԻ, ԿԱՐՏՈՖԻԼԻ ԵՎ ԲԱՆՋԱՐԱ-ԲՈՍՏԱՆԱՅԻՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ—Ճառ ՌՍՖՍՌ Հյուսիս-Արևմուտքի մարզերի և ավտոնոմ ռեսպուբլիկաների գյուղատնտեսության աշխատողների խորհրդակցությունում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մայիսի 25-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի դիմումը *կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, ՄՏԿ-ների ու սովխոզների բանվորներին, պարտիական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպություններին, սովետական ու գյուղատնտեսական օրգաններին, գյուղատնտեսության մասնագետներին ու բոլոր աշխատողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի հունվարի 17-ի համարում։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի դիմումը *Սովխոզների բանվորներին և բանվորուհիներին, բրիգադիրներին, բաժանմունքների և ֆերմաների կառավարիչներին, դիրեկտորներին և մասնագետներին, սովխոզային սիստեմի բոլոր աշ-*



*խաղողներին, տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի մարտի 28-ի համարում։*

### 6. ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԱՎԱՐՏԵՆՔ ԱՇՆԱՆԱՑԱՆԸ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*—Հացահատիկային տնտեսությունը գյուղատնտեսության ամբողջ արտադրության հիմքն է, *ՍՄԿԿ 20-րդ համագումարին տված զեկուցումից, էջ 81—88, Հայպետհրատ, 1956։*

Ժամանակին և բարձր որակով կատարել աշնանացանը, *«Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 4-ի առաջնորդողը։*

### 7. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

#### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ զրույցը ճապոնական «Ասահի Սիմբուն» թերթի գլխավոր խմբագիր պ-ն Տոմոո Հիրոոկայի հետ, *տպագրված, «Ս. Հ.»-ի 1957 թվականի հուլիսի 2-ի համարում։*

Սովետական կառավարության հայտարարությունը զինաթափման բանակցությունների կապակցությամբ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի օգոստոսի 31-ի համարում։*



Զինաթափման պրոբլեմը կարող է և պետք է լուծվի, «Պրավդա»-ի առաջնորդողը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 13-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ա. Բուլգանինի ուղերձը Թուրքիայի պրեմյեր-մինիստր Ա. Մենդերեսին *տպագրված «Ս. Հ.»-ի 1957 թվականի սեպտեմբերի 14-ի համարում։*

---

## СОДЕРЖАНИЕ



---

Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

